Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ







№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն — Երևան, ՀԿՊ Կենտկոմ, պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս 2—52—78։



# ԶՐՈՒՅՑ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ ԱՆԽԱԽՏ ԴԱՇԻՆՔԻ ՄԱՍԻՆ

ՀՈՎՀ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

*Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր ավելի քան կեսդարյա պատմության ընթացքում անշեղորեն ղեկավարվել ու ղեկավարվում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման մասին լենինյան ուսմունքով։*

*Վ. Ի. Լենինը պատմական զարգացման նոր պայմաններում՝ իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում ստեղծագործորեն զարգացնելով մարքսիզմը, մի ամբողջական ուսմունք ստեղծեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի վերաբերյալ։ Լենինը գիտականորեն հաստատեց, որ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը*





վճռական միջոց է ցարիզմը և բուրժուազիայի իշխանությունը տապալելու համար։

Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը ամրապնդելու գործում պատմական նշանակություն ունեցավ Սովետների 2-րդ համագումարի կողմից ընդունված հողի մասին դեկրետը։ Գյուղացիությունը սովետական իշխանությունից ստացավ ավելի քան 150 միլիոն դեսյատին նոր հողեր, որոնք առաջ գտնվում էին շահագործող դասակարգերի ձեռքին։

Սովետական պետության գոյության առաջին տարիներին ծնունդ առավ և զարգացավ բանվորների ու գյուղացիների ռազմաքաղաքական դաշինքը՝ ընդդեմ ներքին կոնտրռևոլյուցիայի և օտարերկրյա ինտերվենցիայի։

Գյուղացիական հիմնական մասսայի նկատմամբ մեր պարտիայի ճիշտ քաղաքականությունը վճռական դեր խաղաց քաղաքացիական պատերազմում Սովետական ռեսպուբլիկայի հաղթանակն ապահովելու գործում։ Խաղաղ շինարարության անցնելու կապակցությամբ բանվորների ու գյուղացիների դաշինքն ամրապնդելու համար պահանջվում էր ամուր տնտեսական հիմք ստեղծել։ Պարտիայի 10-րդ համա-



գումարը որոշում ընդունեց անցնել նոր տնտեսական քաղաքականության, որի հիմնական խնդիրն էր բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի տնտեսական հիմքի ամրապնդման հիման վրա ապահովել սոցիալիզմի կառուցումը մեր երկրում։ Բանվոր դասակարգը սոցիալիզմ կարող էր կառուցել միայն գյուղացիության հետ ամուր դաշինք կնքած։

Երկրի ինդուստրացման քաղաքականության իրականացումը ամուր նյութական-տեխնիկական բազա ստեղծեց սոցիալիզմի համար։ Նա վճռական պայման հանդիսացավ գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման համար։ Գյուղատնտեսությունը տարեցտարի ավելի մեծ թվով մեքենաներ ու գործիքներ էր ստանում սոցիալիստական քաղաքից։ Միայն 1925—26 թվականներին քաղաքից գյուղ է ուղարկվել 945.000 գութան, 88.100 հնձիչ, 54.700 կալսիչ և 94.800 քամհար մեքենա։

Պարտիան մերկացրեց ու ջախջախեց տրոցկիստներին և աջ կապիտուլյանտներին, որոնք բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի քայքայման գիծ էին վարում։ Գյուղացիության հիմնական մասսայի անցումը զարգացման կոլտնտեսային

ուղին, ընդմիշտ հողմացրիվ արեց բուրժուազիայի և նրա վարձկանների՝ մենշևիկների, էսէռների, տրոցկիստների, բուխարինականների կեղծ պնդումներն այն մասին, թե իբր բանվոր դասակարգը ի վիճակի չէ իր հետևից տանելու գյուղացիությանը, նրան ներգրավելու սոցիալիստական շինարարության մեջ։

Գյուղատնտեսության կոլեկտիվացումը և կուլակության որպես դասակարգի լիկվիդացումը է՛լ ավելի ամրապնդեցին բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։ Այդ դաշինքը հասարակական հզոր ուժ հանդիսացավ գյուղում հին արտադրական հարաբերությունները նոր սոցիալիստական արտադրական հարաբերություններով փոխարինելու գործում։ Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը վերածվեց բարեկամության։

Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի, նրանց համագործակցության ձևերը միշտ էլ բխել են սովետական հասարակության շահերից։ Կոնկրետ իրադրությանը համապատասխան միշտ փոխվել են և կփոխվեն Սովետական պետության ամրության հիմքը հանդիսացող բանվոր դա-



սակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի ձևերը։

Այժմ երբ մեր երկիրը անցում է կատարում սոցիալիզմից դեպի կոմունիզմ, պահանջվում է է՛լ ավելի ամրապնդել Սովետական պետությունը։ Մեր պարտիան սրբությամբ իրականացնում է բանվորների և գյուղացիների դաշինքն ամրապնդելու լենինյան պատգամները։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան, Փետրվար-մարտյան և Հունիսյան պլենումների որոշումները նոր խթան հանդիսացան բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն ամրապնդելու գործում։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը կարևորագույն միջոցառումներ են իրականացնում գյուղատնտեսության շեշտակի զարգացման հիման վրա լայն ծավալելու ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։

Գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում վճռական դեր են խաղում ՄՏ կայանները, որոնք հանդիսանում են կոլտնտեսային կարգի նյութատեխնիկական բազան։ ՄՏ կայանները կա-

րևորագույն հենակետեր են, որոնց միջոցով Սովետական պետությունը իրականացնում է ղեկավարությունը կոլտնտեսությունների նկատմամբ։

1953 թվականին ՄՏ կայանները կատարեցին կոլտնտեսությունների դաշտային հիմնական աշխատանքների ավելի քան 80 տոկոսը։ Կոլտնտեսություններում գրեթե ամբողջովին մեքենայացված են ցելի և ցրտահերկի աշխատանքները։ Անցյալ տարի կոմբայններով հավաքվեց բոլոր հացահատիկային կուլտուրաների բերքի 77 տոկոսը, շաքարի ճակնդեղի ցանքերի մոտավորապես 80 տոկոսը։ Գյուղատնտեսությունը հագեցվում է ժամանակակից տեխնիկայով։ 1954 թվականի առաջին կիսամյակում Սովետական պետությունը գյուղատնտեսությանը տվել է 92 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 18 հազար հացահատիկային կոմբայն, 15 հազար տրակտորային և ինքնագնաց խոտհնձիչ, 52 հազար բեռնատար ավտոմոբիլ, մեծ քանակությամբ բամբակահավաք մեքենաներ, ճակնդեղահավաք կոմբայններ, վուշահավաք կոմբայններ, հատիկազտիչ և գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Մոտակա տարիներին պետք է ավարտվի դաշտային աշ-



խատանքների կոմպլեքսային մեքենայացումը կոլտնտեսություններում։ Լայնորեն ծավալվում է աշխատատար պրոցեսների մեքենայացումը անասնաբուծության, բանջարաբուծության և գյուղատնտեսության մնացած ճյուղերում։

Այժմ, ավելի քան երբևէ, կարևոր նշանակություն ունի քաղաքի օգնությունը գյուղին, բանվոր դասակարգի օգնությունը կոլտնտեսային գյուղացիությանը։ Գյուղատնտեսության վերելքն ապահովելու համար արդեն լայն ծավալ է ստացել քաղաքի աշխատավորության շեֆական օգնությունը կոլտնտեսություններին և ՄՏ կայաններին։

Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն ամրապնդելու գործում խոշոր նշանակություն ունի քաղաքի կողմից գյուղին կադրերով օգնելը։ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշման համաձայն արդեն ՄՏ կայաններն են ուղարկվել կոլտնտեսություններին սպասարկելու համար 104 հազար ագրոնոմներ և զոոտեխնիկներ, ավելի քան 23 հազար ինժեներներ և տեխնիկներ։ ՄՏ կայաններում ստեղծված են մեխանիզատորական մշտական կադրեր, բարելավվել են աշխատանքի պայմանները։

Պարտիան և կառավարությունը կարևո-

րագույն միջոցառումներ են իրագործում բերքատվության բարձրացման և խամ ու խոպան հողերի յուրացման միջոցով հացահատիկի արտադրությունը զգալիորեն ավելացնելու համար։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և Սովետական կառավարությունը վերջին շրջանում խոշոր միջոցառումներ են ձեռնարկել կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու ուղղությամբ։ Զգալի չափերով բարձրացվել են կոլտնտեսությունների և կոլտնտեսականների կողմից պետությանը հանձնվող մսի, կաթի, բրդի, կարտոֆիլի ու բանջարեղենի մթերման գները։ Պետությունը կոլտնտեսություններին ու կոլտնտեսականներին զիջել է անասնաբուծության մթերքների, կարտոֆիլի ու բանջարեղենի պարտադիր հանձնումների գծով անցած տարիների նրանց պարտքը։ Միաժամանակ խիստ պակասեցված են կոլտնտեսականների անձնական օժանդակ տնտեսությունից կատարվող պարտադիր հանձնումների նորմաները։ Կոլտնտեսությունների և կոլտնտեսականների տնտեսական խրախուսման հիշյալ միջոցառումների, ինչպես նաև հարկային քաղաքականության բնագավառում



կիրառվող միջոցառումների հետևանքով կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների եկամուտները 1953 թվականին ավելացան ավելի քան 13 միլիոն ռուբլով։ Կոլտնտեսային արտադրության զարգացման գործում կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության սկզբունքի հետևողական կիրառման մեջ մեր պարտիան տեսնում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի հետագա ամրապնդման տնտեսական կարևորագույն գործոններից մեկը։

Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը կոմունիզմի կառուցման կարևորագույն պայմանն է։ Կոմունիստական պարտիան հաջողությամբ կատարում է բանվորների ու գյուղացիների դաշինքը կազմակերպողի և առաջնորդի դերը, որովհետև նրա քաղաքականությունը համապատասխանում է այդ դասակարգերի կենսական շահերին։

---

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՈՒԺԵՐԻ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Ա. ՖԻԼԻՊՈՎ

*Երկրագնդի բոլոր ազնիվ մարդիկ բերկրանքով ընդունեցին այն լուրը, որ Ժնևի խորհրդակցությունը վերջ դրեց Հնդկաչինում համարյա ութը տարի շարունակվող արյունահեղ պատերազմին։*

*Դիվանագիտական բանակցությունների միջոցով Ասիայում պատերազմի օջախը վերացնելը միլիոնավոր մարդկանց ցույց տվեց, թե որքան խորապես իրավացի էր Սովետական Միությունը, հայտարարելով, որ չկան այնպիսի վիճելի պրոբլեմներ, որոնք հնարավոր չլիներ լուծել բանակցությունների միջոցով։ Պատերազմական գործողությունների դադարեցումը Հնդկաչինում վկայություն է այն բանի, որ ամերիկյան կառավարող շրջանների ագրեսիվ քաղաքականությունը, երբ նրանք, ելնելով «ուժի դիրքից» փորձում են իրենց կամքը թելադրել ժողովուրդներին,*



*կրեց ևս մի խոշորագույն պարտություն։ Չնայած ամերիկյան ագրեսորների ամեն տեսակ դիմադրությանը, Հնդկաչինի և Ֆրանսիայի ժողովուրդները հասան բաղձալի խաղաղության։*

*Ստորագրված համաձայնագրերին համապատասխան՝ Ֆրանսիան հայտարարեց, որ ինքը պատրաստ է իր զորքերը դուրս բերելու Հնդկաչինի բոլոր երեք պետություններից՝ Վյետնամից, Լաոսից և Կամբոջայից։ Ֆրանսիական կառավարությունը հավաստիացրեց, որ այդ երկրներում խաղաղությունը վերականգնելու հետ կապված հարցերը կարգավորելիս Ֆրանսիայի քաղաքականությունը հիմնվելու է այդ պետությունների անկախությունն ու սուվերենիտետը, միասնությունն ու տերիտորիալ ամբողջականությունը պահպանելու վրա։*

*Ժնևի համաձայնագրերը վառ կերպով վկայում են գաղութային ռեժիմի դեմ մղած ազգային-ազատագրական պայքարում Հնդկաչինի ժողովուրդների տարած հաղթանակի մասին։ Հսկայական նշանակություն ունի խաղաղության վերականգնումը Վյետնամում, որտեղ ժողովուրդը դեռ 1945 թվականին ստեղծել է իր դեմոկրատական ռեսպուբլիկան։ Հնդկաչինում մղված պատերազմի վախճա-*

նը կրկին անգամ հաստատում է լենինյան այն իմաստուն խոսքերը, որ երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որտեղ բանվորները և գյուղացիները՝ իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ նրանք պաշտպանում են իրենց իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը։

Ժնևում ստորագրված համաձայնագրերով հաշվի են առնվել անհրաժեշտ միջոցառումներ՝ թույլ չտալու, որ Հնդկաչինի տերիտորիան օգտագործվի ագրեսիվ նպատակներով։ Այսպես, օրինակ, Վյետնամում պատերազմական գործողությունները դադարեցնելու վերաբերյալ համաձայնագրով արգելվում է օտարերկրյա զորքի ու անձնակազմի, զենքի ու զինամթերքի փոխադրումը Վյետնամ։ Վյետնամի ամբողջ տերիտորիայում արգելվում է ռազմական նոր բազաների ստեղծումը։ Երկու կողմերն էլ պարտավորվել են հետևել, որպեսզի իրենց հատկացված գոտիները չօգտագործվեն ռազմական գործողությունների վերսկսման համար և չմտնեն որևէ ռազմական դաշինքի մեջ։ Միաժամանակ Լաոսի և Կամբոջայի կառավարությունները հայտարարեցին, որ իրենք չեն միանա ուրիշ պետությունների որևէ համաձայնագրի, եթե այդ համաձայնագրերում պարտա-



վորություն է պարունակվում մասնակցելու այնպիսի ռազմական դաշինքի, որը չի համապատասխանում Միավորված Ազգերի Կազմակերպության Կանոնադրության սկզբունքներին կամ պատերազմական գործողությունների դադարեցման համաձայնագրին։

Դա ուժգին հարված էր ամերիկյան զավթիչների պլաններին, որոնք հույս ունեին Վյետնամի, Լաոսի և Կամբոջայի հարավային մասը մտցնել ագրեսիվ պակտի մեջ և նրանց տերիտորիայում ստեղծել ռազմական բազաներ՝ Ասիայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները ճնշելու համար։

Կնքված համաձայնագրերի պայմանների համաձայն, 1956 թվականի հուլիսին Վյետնամում անց են կացվելու ընդհանուր, ազատ ընտրություններ և, այսպիսով, իրագործվելու է ամբողջ վյետնամական ժողովրդի միավորումը՝ նրա ազգային շահերին համապատասխան։ Մեծ է նաև այն որոշման նշանակությունը, որ վերաբերում է Լաոսում և Կամբոջայում՝ անցյալում իրավազուրկ այդ գաղութներում ընդհանուր, ազատ ընտրություններ անցկացնելուն։ Այդ երկրների կառավարությունները պարտավորվել են անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել, որպեսզի

բոլոր քաղաքացիներին հնարավորություն
տրվի ազատորեն մասնակցելու ընտրություն-
ներին։ Նախատեսված է ընտրությունները
անցկացնել 1955 թվականի ընթացքում։

Ժնևի համաձայնագրերի կատարման վե-
րահսկողությունը ու հսկողությունը դրված է
Հնդկաստանի, Լեհական ժողովրդական Ռես-
պուբլիկայի և Կանադայի ներկայացուցիչնե-
րից կազմվող միջազգային հանձնաժողովի
վրա։ Պարտություն կրեցին ամերիկյան դի-
վանագիտության այն փորձերը, որոնց նպա-
տակն էր թույլ չտալ, որ դեմոկրատական
լագերի երկրների ներկայացուցիչը մասնակ-
ցի Հնդկաչինում խաղաղությունը վերականգ-
նելու պայմանների կատարման նկատմամբ
իրագործվող վերահսկողությանը։

Ժնևի խորհրդակցության հետևանքով է՛լ
ավելի աճեց Ասիայում խաղաղության հզոր
ամրոց Չինական ժողովրդական Ռեսպուբլի-
կայի հեղինակությունը։ Չինական դելեգա-
ցիան, ելնելով իր պետության արտաքին խա-
ղաղասիրական քաղաքականությունից, Ժնևի
խորհրդակցության ամբողջ ընթացքում աշ-
խատում էր հասնել համաձայնության։ Այժմ
ամբողջ աշխարհն է ընդունում, որ առանց
Չինական ժողովրդական Ռեսպուբլիկայի՝ ա-
ռանց աշխարհի այդ մեծ տերություններից



մեկի՝ չի կարելի լուծել միջազգային կարե-
վորագույն հարցերը։

Ժնևի խորհրդակցության ձեռք բերած հա-
ջողությունը նպաստում է խաղաղության և
դեմոկրատիայի լագերի երկրների ուժերի ու
հեղինակության հետագա ամրապնդմանը։

Ժնևում ստորագրված համաձայնագրերը
մի նոր խոշոր քայլ են հանդիսանում խաղա-
ղությունն ամրապնդելու և միջազգային հա-
մագործակցությունը զարգացնելու ճանա-
պարհին։ Ամբողջ աշխարհի ժողովուրդները
այդ համաձայնագրերը դիտում են որպես
պրոգրեսիվ ուժերի մի խոշոր հաղթանակ,
որպես մի լավագույն ապացույց այն բանի,
որ միջազգային վիճելի հարցերը կարելի է
կարգավորել բանակցությունների ու համա-
ձայնագրերի միջոցով։

«Դաժան պատերազմի դադարեցումը, որ
ձեռք բերվեց բանակցությունների հետևան-
քով,— գրում է հնդկական մի հայտնի թերթ,
— հսկայական թեթևություն բերեց ոչ միայն
Հնդկաչինի ժողովուրդներին, այլև Հարավ-
Արևելյան Ասիայի մյուս ժողովուրդներին և
Ֆրանսիայի ժողովուրդներին»։ Թերթը հույս
է հայտնում, որ Ժնևի խորհրդակցության
հաջողությունը «խաղաղության և լարվածու-

թյունը թուլացնելու բարի նախագուշակ կլինի նաև մյուս ասպարեզներում»։

«Կրակի դադարեցումը Հնդկաչինում,— գրում է հնդկական մի այլ խոշոր բուրժուական թերթ,— խաղաղության ուժերի հաղթանակն է պատերազմի նկատմամբ։ Դա խիզախ ու համբերատար բանակցությունների հաղթանակն է»։ Թերթը գրում է, որ «դուրս է մնում միայն ԱՄՆ-ը՝ հիստերիայի հասնող երկյուղի ու կասկածամտության դիրք գրավելով»։

Մամուլը նշում է, որ Հնդկաչինում պատերազմը դադարեցնելու համաձայնագրերը ուժգին հարված հասցրին ԱՄՆ-ի ագրեսիվ պլաններին։

Ֆրանսիայի ժողովրդի համար թանկ նստեց այն ավանտյուրան, որ սկսեց 1946 թվականին Ֆրանսիայի այն ժամանակվա կառավարությունը՝ հանուն մի բուռ մոնոպոլիստների շահերի։ Միայն պաշտոնական և բացահայտորեն նվազեցված տվյալներով, ֆրանսիական էքսպեդիցիոն կորպուսը Հնդկաչինի մարտադաշտերում կորցրել է 92.000 մարդ՝ սպանված և անհետ կորած։ 114.000 զինվոր ու սպա վիրավորվել է, 28.000 մարդ գերի է վերցվել։ Պատերազմի համար Ֆրանսիան վճարել է ավելի քան 3.000 միլիարդ



ֆրանկ։ Ուստի հասկանալի է, թե ինչու ֆրանսիական հասարակության ամենալայն շրջաններին անկեղծ ուրախություն պատճառեց պատերազմական գործողությունների դադարեցումը Հնդկաչինում։

«Յումանիտե» թերթը իր էջերում հրապարակել է Ֆրանսիայի կոմունիստական պարտիայի հայտարարությունը, որի մեջ բարձր գնահատական է տրվում Ժնևի խորհրդակցության արդյունքներին։

«Դա բանվոր դասակարգի գլխավորությամբ ֆրանսիական ժողովրդի ավելի քան յոթնամյա պայքարի արդյունքն է։ Դա արդյունք է խաղաղության աննկուն կամքի և այն անդուլ ջանքերի, որ Ժնևում գործադրում էին Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և Վյետնամի Դեմոկրատական ռեսպուբլիկան, ինչպես նաև արդյունք է բոլոր ժողովուրդների պայքարի»։

Ժնևի խորհրդակցությունը միլիոնավոր մարդկանց գիտակցության մեջ ամրապնդեց հավատն այն բանի նկատմամբ, որ հնարավոր է և անհրաժեշտ է կարգավորել խաղաղության ու անվտանգության պրոբլեմները Եվրոպայում։

«Ժնևի խորհրդակցության բարեհաջող ա-

վարտումը,— ասվում է Ֆրանսիայի կոմունիստական պարտիայի հայտարարության մեջ,— ցույց է տալիս, որ հնարավոր է և անհրաժեշտ լուծել նաև մյուս հրատապ պրոբլեմները, որոնցից կախված է մեր ազգի բախտն ու ապագան։ Ֆրանսիական ժողովուրդը կարող է և պետք է, որքանով այդ ցանկանում է ամբողջ ժողովուրդը, առաջին հերթին կտրականապես «ո՛չ» ասի եվրոպական բանակին, գերմանական ռևանշիստների վերազինմանը, ինչպիսի դրոշով էլ քողարկվելու լինեն այդ պլանները»։

Ֆրանսիական ժողովրդի խաղաղության ու անկախության վեհ ձգտումը ջերմ պաշտպանություն է գտնում ամբողջ աշխարհի խաղաղության և անվտանգության հուսալի պաշտպան Սովետական Միության կողմից։ Խաղաղության ամրապնդման համար հսկայական նշանակություն ունի Սովետական կառավարության՝ հուլիսի 25-ին հրատարակված նոտան Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության հարցի վերաբերյալ։ Այդ հարցի առթիվ մտքեր փոխանակելու նպատակով Սովետական կառավարությունը, մասնավորապես, առաջարկում է հրավիրել բոլոր եվրոպական պետությունների, ինչպես նաև ԱՄՆ-ի խորհրդակցություն։ Սովետական կառավարությունը ցանկալի է համարում, որ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան իր դիտորդն ուղարկի այդ խորհրդակցությանը։ Ինչպես նշվում է Սովետական կառավարության նոտայում, կոլեկտիվ անվտանգության սիստեմի հիման վրա խաղաղության ամրապնդումը Եվրոպայում կարևորագույն ավանդ կլիներ միջազգային լարվածությունը թուլացնելու գործում։



Ժնևի խորհրդակցությունը ցույց տվեց, որ բանակցությունների ուղին կարող է հանգեցնել խաղաղության և անվտանգության ձգտող ժողովուրդների շահերին համապատասխանող համաձայնությունների։

———

# ԻՆՉՊԵՍ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Մեր մեծ ու հզոր Հայրենիքի հերոսական պատմության մեջ իր պատվավոր տեղը կգրավի Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը։ Ցուցահանդեսը գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողների համար իրավամբ հանդիսանում է առաջավոր փորձի գանձարան ու հիանալի դպրոց, որը գործնականում ցույց է տալիս, թե ինչպես կարելի է բարձրացնել հողի բերքատվությունը, անասունների մթերատվությունը, ամենուրեք ստեղծել գյուղատնտեսական մթերքների առատություն։ Ցուցահանդեսը լավագույն միջոց է սոցիալիստական գյուղատնտեսության նվաճումները լայնորեն պրոպագանդելու, արտադրության մեջ առաջավոր փորձն ամենաարագ կերպով արմատավորելու համար։



Կոլտնտեսային և սովխոզային արտադրության մեջ գյուղատնտեսության առաջավորների փորձն արմատավորելու գործում խոշոր անելիքներ ունեն ագիտատորները։ Նրանք ամեն օր կոլտնտեսականներին, սովխոզներում և մեքենա-տրակտորային կայաններում աշխատող բանվոր-ծառայողներին պետք է պարզաբանեն, թե ցուցահանդեսի մասնակիցները ինչպես և ինչ միջոցներով են հասել բարձր բերքատվության և բարձր մթերատվության։

Սոցիալիստական գյուղատնտեսության նվաճումները, որ փայլուն կերպով ներկայացված են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում, ավելի նպատակասլաց պրոպագանդելու և մասսայականացնելու համար անհրաժեշտ է օգտագործել քաղաքական ագիտացիայի բոլոր ձևերն ու միջոցները, ինչպես օրինակ՝ խմբակային և անհատական զրույցները, թերթերի և ամսագրերի ընթերցանությունը, ցուցադրական ագիտացիան, ունկնդիրների հետ ցուցահանդեսի մասնակիցների հանդիպումների կազմակերպումը և այլն։

Զրույցը ագիտացիոն աշխատանքի ամենատարածված և ամենահիմնական ձևերից մեկն է։ Այն հնարավորություն է տալիս ա-

վելի մոտիկից ճանաչել ունկնդիրներին, ժամանակին իմանալ, թե ինչ պահանջներ ունեն նրանք և ինչն է հետաքրքրում նրանց։

Իհարկե ագիտացիոն զրույցի հաջողությունը կախված է այն նախապատրաստական աշխատանքից, որ պետք է կատարի ագիտատորը մինչև ունկնդիրներին հանդիպելը։ Հարկավոր է նախ հանգամանորեն ծանոթանալ նյութին, բազմակողմանիորեն ու խոր կերպով տիրապետել այն և ապա շարադրել զրույցը։ Այդ դեպքում զրույցը կլինի հետաքրքիր, ունկնդիրները ակտիվ կերպով կմասնակցեն նրան և կպարզաբանեն իրենց հետաքրքրող շատ հարցեր։ Հաճախ այնպիսի դեպքեր են լինում, երբ ագիտատորը լրջորեն չի վերաբերվում հանձնարարված գործին, ագիտացիոն զրույցի փոխարեն սկսում է բարոյախոսական ճառ արտասանել, անթիվ ու անհաշիվ թվեր հրապարակել, ցիտատներ կարդալ և խոսքախեղդ անելով ունկնդիրներին՝ պասսիվության մատնել նրանց։ Հասկանալի է, որ նման ագիտատորներին ունկնդիրները պատժում են լռությամբ, հարցեր չեն տալիս նրան և նույնիսկ ավելորդ են համարում հարցնել, թե երբ է տեղի ունենալու հաջորդ զրույցը։

Գյուղատնտեսության առաջավորների,



հատկապես ցուցահանդեսի մասնակիցների փորձը նպատակասլաց կերպով մասսայականացնելու գործում, բացի ագիտացիոն զրույցից, լավագույն միջոց է նաև ընթերցանությունը։ Ոմանք կարծում են, թե ունկնդիրների համար ընթերցանություն կազմակերպելը հանգիստ գործ է և կարիք չկա այդ ուղղությամբ նախապատրաստական աշխատանք կատարել։ Դա խորապես սխալ կարծիք է։ Հետաքրքիր ընթերցանություն կազմակերպելու համար պետք է նախօրոք թերթերից և ամսագրերից այնպիսի նյութեր ընտրել, որոնք հստակ պատկերացում տան ցուցահանդեսի մասնակիցների աշխատանքի փորձի մասին կամ որտեղ պատկերավոր կերպով նկարագրված լինի ցուցահանդեսի քաղաքական ու տնտեսական նշանակությունը կամ այն ուղիները, որոնցով կարելի է ավելի արդյունավետ ու լրիվ կարողությամբ օգտագործել գյուղատնտեսական տեխնիկան։ Պատկերավոր ընթերցանությունը, եթե այն գրավում է ունկնդիրներին, հուզում է նրանց՝ մեծ արվեստ է, ագիտատորը պետք է քրտնաջան աշխատանքով տիրապետի նրան։ Ընթերցանությունը աշխույժ և հետաքրքիր է լինում այն ժամանակ, երբ ագիտատորը ուշի-ուշով հետևում է, թե ինչ-

պես է ընթերցանությունը տեղ հասնում, որտեղ է անհրաժեշտ դադարեցնել ընթերցանությունը և մեկնաբանել կարդացածը, պատասխանել ունկնդիրների հարցերին կամ շեշտել առանձին մտքեր՝ ունկնդիրների ուշադրությունն այդ հարցի վրա բևեռելու նպատակով։

Մամուլը աշխատավորների լայն շրջանում կատարվող քաղաքական ագիտացիայի հիմնական աղբյուրն է։ Պետք է այն օգտագործել ամեն օր և նպատակասլաց կերպով։

Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսում ներկայացված առաջավոր փորձը բոլոր կոլտնտեսականների ու մեխանիզատորների սեփականությունը դարձնելու գործում կարևորագույն նշանակություն ունի ցուցահանդեսից վերադարձած գյուղատնտեսության առաջավորների հանդիպումներ կազմակերպելը ունկնդիրների հետ։ Թո՛ղ Մոսկվայից վերադարձած ցուցահանդեսի յուրաքանչյուր մասնակից ունկնդիրներին պատմի իր տպավորությունները, սեփական աչքերով տեսածները։ Դա կլինի կենդանի զրույց սոցիալիստական գյուղատնտեսության հաջողությունների մասին, կնպաստի առաջավոր փորձի տարածմանն ու արմատավորմանը կոլտնտեսություններում։



Գյուղատնտեսության առաջավորների նվաճումները ավելի լավ պատկերելու և լայնորեն մասսայականացնելու համար խոշոր նշանակություն ունի ցուցադրական ագիտացիան։ Հարկավոր է բոլոր աչքի ընկնող տեղերում փակցնել ցուցադրական ագիտացիոն նյութեր՝ պլակատներ, լոզունգներ, գեղարվեստորեն ձևավորված ցուցանիշների տախտակներ, դիագրամաներ, ցուցափեղկեր և այլն։ Ցուցադրական ագիտացիոն նյութերը պետք է պարզ պատկերացում տան այն հսկայական աշխատանքի մասին, որ կատարվում է մեր երկրում գյուղատնտեսական մթերքների է՛լ ավելի առատություն ստեղծելու համար։

Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացմանը նվիրված ցուցադրական ագիտացիայի միջոցով կոլտնտեսականները միաժամանակ տեղյակ են լինում այն կոնկրետ ու պրակտիկ խնդիրներին, որ դրված են կոլտնտեսության առջև և այն մասին, թե ով ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունները։ Անհրաժեշտ է նաև, որ մեր ագիտատորները ագիտացիոն զրույցների ընթացքում պարբերաբար օգտագործեն ցուցադրական ագիտացիոն նյութերը, ինչպես օրինակ՝ ամսագրե-

րում և թերթերում տպված ֆոտո նկարներ,
որոնք պատկերում են ցուցահանդեսում ներ-
կայացված էքսպոնատները, գյուղատնտե-
սության մեջ կատարված նորարարություն-
ները, ալբոմներ, դիագրամաներ, ցուցահան-
դեսի մասնակիցների պորտրեներ, ֆոտո-
մոնտաժներ և այլն։
Ցուցադրական ագիտացիան ոչ միայն լա-
վագույն միջոց է առաջավորների փորձը
մասսայականացնելու համար, այլև մի ուժեղ
զենք է թերությունների դեմ պայքարելու
համար։ Ծաղրանկարների միջոցով կարելի
է հասարակական պարսավանքի ենթարկել
լոդրերին, ծույլերին, աշխատանքային կար-
գապահության խախտողներին։
Սոցիալիստական գյուղատնտեսության
նվաճումները աշխատավորների լայն շրջա-
նում պարբերաբար և նպատակասլաց կեր-
պով մասսայականացնելն ունի կենսական
նշանակություն, այն նպաստել ու նպաստում
է գյուղատնտեսության առաջավորների փոր-
ձը արագ և հաջողությամբ արմատավորելու
կոլտնտեսություններում, սովխոզներում և
մեքենա-տրակտորային կայաններում։

---



# ՄԵՐ ՖԱԲՐԻԿԱՅԻ ՄԱՐԿԱՅԻ ՊԱՏՎԻ ՀԱՄԱՐ

### Երևանի մահուդի ֆաբրիկայի ագիտատոր Կ. Ղարագյոզյանի պատմածը

Մեր ֆաբրիկայի արտադրանքը այժմ գը-
նում է ամեն տեղ։ Սովետական Միության
մեծ ու փոքր քաղաքներում, անթիվ գյուղե-
րում ու բանվորական ավաններում լայն ըն-
դունելություն են գտել մեր ֆաբրիկայի ար-
տադրած «Երևանյան», «Մայրաքաղաքային»
բրդյա գործվածքները, կապույտ, դարչնա-
գույն և մոդային բաց երանգներով մահուդը,
դրապը և արտադրանքի մյուս տեսակները։
Այս հանգամանքը մեզ՝ մահուդագործներիս
վրա մեծ պարտականություն է դնում։ Մի՞թե
կա ավելի պատվավոր խնդիր, քան սովե-
տական ժողովրդի հարաճուն պահանջմունք-
ների բավարարումը, քան այն խնդրի կատա-
րումը, որ դրել են մեզ վրա Կոմունիստական
պարտիան, Սովետական կառավարությունը
ժողովրդական սպառման առարկաների ար-

տադրությունը ավելացնելու և դրանց որա-
կը բարելավելու համար։ Մենք պարտավոր
ենք սովետական սպառողին տալ գեղեցիկ,
բազմագույն և ամուր գործվածքեղեն։

Ամեն օր աշխատանքի անցնելիս, յուրա-
քանչյուր բանվոր լավ գիտե, որ հաջորդ՝
1955 թվականին իր հարազատ ֆաբրիկան
արդեն երկրին տալու է մեկ միլիոն 200 հա-
զար մետր արտադրանք։ Այդ թիվը մոբիլի-
զացնող է, որովհետև դրան հասնելու հա-
մար պահանջվում է ավելի լարված աշխա-
տանք։ Գործը իհարկե միայն նոր կորպուս-
ներով, նոր մեքենաներով գլուխ չի բերվի։
Այստեղ պահանջվում է, որ մենք կարողա-
նանք առավելագույն կերպով օգտագործել
ներքին բոլոր ռեզերվները։ Այդ ուղղությամբ
մենք ունենք լավ փորձ։ Հենց այն հանգա-
մանքը, որ վերջին 5 տարում մեր ֆաբրիկան
պատրաստի գործվածքեղենի արտադրությու-
նը մեծացրել է ավելի քան երկու և կես ան-
գամ, ցույց է տալիս, թե ինչպես մենք կա-
րող ենք այսուհետև ևս լայնորեն օգտագոր-
ծել մեր հնարավորությունները։

Հեռու չգնալու համար վերցնենք հենց այս
տարվա մեր աշխատանքի փորձը։ Մանված-
քային ցեխը սարքավորման լրիվ օգտագործ-
ման շնորհիվ արտադրողականության բարձ-



րացման ասպարեզում հիանալի օրինակ է
տալիս։

Արտադրանքի որակի բարելավման ուղ-
ղությամբ առանձնապես բարձր ցուցանիշնե-
րի հասավ մանածագործուհի Ծաղիկ Դեմիր-
յանի բրիգադան, որը արտադրանքի թո-
ղարկման պլանը կատարելով 116 տոկոսով,
առաջին տեսակը հասցրեց 97,8 տոկոսի։
Պատահական չէ, որ այդ բրիգադան ստա-
ցավ Հայկական ՍՍՌ Լայն սպառման ար-
դյունաբերական ապրանքների մինիստրու-
թյան գերազանց որակի բրիգադայի կոչումը։
Պակաս արդյունքների չհասավ ջուլհակու-
հի Լուսիկ Դադայանը, որը առաջին տեսակի
արտադրանքը հասցրել է 98 տոկոսի, իսկ
Ջիմա Հարությունյանը՝ 99 տոկոսի։

Արտադրանքի որակը շեշտակիորեն բարե-
լավելու համար հսկայական նշանակություն
ունի հումքի ռացիոնալ օգտագործումը։ Այդ
ուղղությամբ ջանք չեն խնայում թե՛ ման-
վածքային և թե՛ գործվածքային ցեխերում։
Օրըստօրե բարձրացվում է հումքի օգտա-
գործման ցուցանիշը։ Միայն վերջին 5—6
ամսում տնտեսված է մոտավորապես 10
տոննա բրդյա մանվածք։ Ֆաբրիկան այս
տարի տնտեսված հումքի հաշվին արդեն
աշխատել է 10 օր։

Մեր ֆաբրիկայի մարկան այժմ բարձր է գնահատվում։ Շատ արձագանքներ ենք ստանում սովետական սպառողներից, որոնք գովաբանում են մեր արտադրանքի որակը։ Բայց դա չի կարող հանգստացնել մեզ։ Սովետական սպառողի պահանջը գնալով մեծանում է։ Մեզանից նրանք պահանջում են ավելի բարձրորակ, չխունացող գործվածքեղեն։ Մենք պարտավոր ենք կատարել սովետական սպառողի օրինական պահանջը։

Միայն վերջերս մենք տեղադրեցինք եփման-հարթեցման մեքենան։ Այդ մեքենան պատրաստվել է ֆաբրիկայի աշխատողների ուժերով։ Այն զգալիորեն բարելավում է արտադրանքի որակը։ Կազմակերպվել է բրդի կարբոնացումը, որը հնարավորություն է տալիս վերջնականապես վերացնել բրդի մեջ եղած փշերը, բարելավել արտադրանքի որակը և տեսքը։

Տեսակայնության բարելավման ուղղությամբ խոշոր աշխատանք է կատարվում ֆաբրիկայում։ Անընդհատ ուժեղացվում է տեխնիկական վերահսկողությունը և բարելավվում ֆաբրիկայի լաբորատորիայի աշխատանքը։ Մանվածքային ցեխում մտցվել է մանվածքի ամենօրյա պասպորտիզացիա, որը հնարավորություն է տալիս արագորեն



հայտնաբերել որակի գործում նկատվող թերությունները և արագորեն վերացնել դրանք։

Ինչպես արտադրանքի ավելացման, այնպես էլ արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ դեռ շատ անելիքներ ունենք։ Այժմ գործվածքային ցեխում դրվել են լրացուցիչ 12 հաստոցներ։ Դրա շնորհիվ արտադրանքի թողարկումը օրական ավելացել է 350 մետրով։ Եկող տարի այդ նույն ցեխում կտեղադրվի ևս 60 հաստոց, որը ցեխի կարողությունը կավելացնի 64 տոկոսով։

Միջոցներ են ձեռնարկվել մանվածքային ցեխի արտադրողականությունը գրեթե 80 տոկոսով ավելացնելու համար։

Ինչպես այս տարվա, այնպես էլ եկող տարվա պետական առաջադրանքը ժամկետից շուտ կատարելու համար ունենք բոլոր պայմանները։ Մեզ տրված են նյութական և տեխնիկական անհրաժեշտ միջոցներ։ Արտադրանքի գերազանց որակի համար ծավալված սոցիալիստական մրցությունը ամեն օր ծնում է նորանոր առաջավոր մարդիկ։ Եթե առաջներում, ասենք մի քանի տարի առաջ, պլանը գերակատարող բանվորները հատուկենտ էին, ապա այժմ մեզ մոտ գրեթե չկան պլանը թերակատարողներ։ Սոցիալիստական մրցության դրական արդյունքներից մեկն էլ

այն է, որ ետ մնացող շատ բանվորներ այժմ
ոչ միայն կատարում, այլև գերակատարում
են իրենց նորմաները, շնորհիվ այն բանի,
որ առաջավոր բանվորները, առաջավոր բրի-
գադաները կոնկրետ օգնություն են կազմա-
կերպում ետ մնացողներին։ Այդ օգնության
շնորհիվ անընդհատ խտանում են առաջա-
վորների շարքերը։ Ուսումնասիրելով և ար-
տադրության մեջ արմատավորելով մաքոք-
ների մաքրման և թելի կտրվածքները վերաց-
նելու ասպարեզում Լուսիկ Դադյանի, Տիրու-
հի Կարապետյանի, Սիմիզար Գրիգորյանի
աշխատանքի դրական փորձը, հենքային շատ
բանվորներ ու բանվորուհիներ հասել են ար-
տադրանքի որակի հիանալի ցուցանիշների։
Նրանք նույնիսկ անցել են իրենց վարպետ-
ներից։ Այդ իհարկե ոչ թե վարպետների
պարտությունն է, այլ նրանց հաղթանակը,
որովհետև սոցիալիստական մրցության նր-
պատակն այն է, որ ետ մնացողները հասնեն
առաջավորներին ու անցնեն իրենց մրցակից-
ներից։

Մահուդի ֆաբրիկայի մարկայի պատիվը բարձր կպահենք նրանով, որ ավելի խտացնենք առաջին տեսակի արտադրանք տվողների շարքերը, հասնենք այն բանին, որ մասսայաբար գերակատարվի տեսակայնության



պետական առաջադրանքը։ Մեր ֆաբրիկայից չպետք է դուրս գա ցածրորակ արտադրանք։ Արտադրանքի բարձր որակի համար մղվող պայքարում մեր ֆաբրիկան ձեռք է բերել դրական փորձ։ Խնդիրը նրանումն է, որպեսզի այդ փորձի հիման վրա ավելի բարձր ցուցանիշների հասնենք։ Չի կարելի բավարարվել նրանով, ինչ արդեն ձեռք է բերված և անցած է։ Անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր բանվոր աշխատանքի վերջում հանրագումարի բերի, թե ինչ է արել իր ֆաբրիկայի մարկայի պատվի համար։ Անհրաժեշտ է հանրագումարի բերել, թե ինչ թերություններ են նկատվել օրվա ընթացքում և ինչ կարելի է անել վաղը ավելի լավ արդյունքների հասնելու համար։ Մահուդի ֆաբրիկայի բանվոր-բանվորուհիները, ինժեներա-տեխնիկական աշխատողները պատվով կկատարեն պարտիայի ու կառավարության առաջադրանքները և սովետական սպառողին կտան ամուր, գեղեցիկ, ճաշակով արտադրանք։

———

# ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

(Թվեր և փաստեր)

*Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսը խոշորագույն իրադարձություն է սովետական ժողովրդի կյանքում: Այն փայլուն կերպով ցույց է տալիս սոցիալիստական գյուղատնտեսության գերազանցությունը և նրա վիթխարի հաջողությունները հետպատերազմյան ժամանակաշրջանում: Այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը:*

✪ *Սովետական Միությունում այժմ կան առաջնակարգ տեխնիկայով հագեցված 94 հազար կոլտնտեսություն, 8950 մեքենա-տրակտորային կայան, ավելի քան 4700 սովխոզ:*

✪ *Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը զբաղեցնում է ավելի քան 200 հեկտար տարածություն: Ցուցահանդեսում կառուցված 307 պավիլիոններից և այլ կառուցումներից ավելի աչքի են ընկնում ցուցահանդեսի գլխավոր պավիլիոնը, 16 ռեսպուբլիկաների, 12 զոնալ և 47 ճյուղային պավի-*



*լիոնները: Ցուցահանդեսի 76 պավիլիոններում տեղավորված են ավելի քան 3700 գեղեցիկ ձևավորված ստենդներ, որոնցում ցույց է տրվում ցուցահանդեսի մասնակիցների աշխատանքի դրական փորձը:*

✪ *Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցում են՝ 3911 կոլտնտեսություն, 1306 սովխոզ, 419 մեքենատրակտորային և մասնագիտացված կայան, 3254 անասնապահական ֆերմա, 196 շրջան, 534 գիտա-հետազոտական և փորձագիտական հիմնարկ, 134 ուսումնական հաստատություն, 2302 դպրոց և պատանի բնասերների խմբակ:*

✪ *Ստեղծված քաղաք-պալատ-պավիլիոնների ստենդներում բնական էքսպոնատներում մանրամասն և հանգամանորեն պատմվում է 800 կոլտնտեսությունների, 300 սովխոզների, 200 մեքենատրակտորային և մասնագիտացված կայանների, 300 անասնաբուծական ֆերմաների, մի շարք գիտա-հետազոտական հիմնարկների, բոլոր 16 միութենական եղբայրական ռեսպուբլիկաների գյուղատնտեսության նորարարների, կազմակերպիչների, մասնագետների առաջավոր փորձի մասին:*

✪ *35 տարի առաջ երկրի գյուղատնտեսության համար Վ. Ի. Լենինը երազում էր 100 հազար տրակտորների մասին: 1933 թվականին այդ թիվը գերազանցվեց ավելի քան 2 անգամ, 1939 թվականին՝ գրեթե հինգ անգամ: Ներկայումս երկրում կա ավելի քան մեկ միլիոն երկու հարյուր հազար տրակտոր (15 ձիու*

ուժանոց)։ Մեր հայրենիքի դաշտերում աշխատում են ավելի քան 350 հազար հացահատիկային կոմբայն, 33 հազար փոշեգղիչներ և փոշային կոմբայն, 11 հազար ճակնդեղի կոմբայն, ավելի քան 24 հազար բամբակահավաք մեքենաներ, մոտ 10 հազար կարտոֆիլի կոմբայն և ուրիշ շատ գյուղատնտեսական մեքենաներ։

✪ Գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման պավիլիոնի 26 դահլիճներում և բաց հրապարակներում դրված են զանազան գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների ավելի քան 1200 տեսակ։ Այս պավիլիոնի, ինչպես նաև մյուս պավիլիոնների էքսպոնատներում արտացոլված է քաղաքի և գյուղի աշխատավորների անխզելի կապը, մեր պետության հիմքերի հիմքը հանդիսացող բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության անսասան դաշինքը։

✪ Ցուցահանդեսի բաց հողամասերում, ջերմատներում ու ջերմոցներում աճեցվում են 260 գյուղատնտեսական կուլտուրաներ, 1907 սորտի բույսեր, այդ թվում՝ միայն հացահատիկի 354 սորտ։ Այստեղ են ամբողջ աշխարհին հայտնի Կուբանի, Ալթայի, Ուկրաինայի ցորենի սորտերը, բարձր բերքատու հացահատիկային սիզախոտային հիբրիդներ, որոնք չեն պառկում նույնիսկ ամենաուժեղ անձրևներից հետո, ինչպես նաև բազմամյա ցորենի ցանքերը։



✪ Ցուցահանդեսի միչուրինյան այգու ծառուղիներում 7 հեկտար տարածության վրա աճեցված են 2300 պտղատու ծառ, բազմաթիվ պտուղների թփեր, 200 անտառային մացառների տեսակներ և այլն։

✪ Զապորոժյեի մարզի Օսիպենկոյի շրջանի կոլտնտեսությունները 1952—53 թվականներին 28 հազար հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել են 20 ցենտներ հացահատիկի միջին բերք։ Չելյաբինսկի մարզի Վերխնի ուրալսկի շրջանը անցյալ տարի 60 հազար հեկտար գարնանացան ցորենի տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 19,7 ցենտներ բերք։

✪ Ցուցահանդեսի մասնակիցների թվում կան այնպիսի շրջաններ և ՄՏԿ-ներ, որոնք ամբողջ ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել են 22—23 ցենտներ ցորեն և այնպիսի սովխոզներ ու կոլտնտեսություններ, որոնք ստացել են 30 և ավելի ցենտներ ցորեն։ Շատ շրջաններ ոռոգելի հողերում յուրաքանչյուր հեկտարից ստացել են 27—35 ցենտներ բամբակի բերք, կոլտնտեսություններ և ՄՏԿ-ներ, որոնք ստացել են 38—40 ցենտներ, բրիգադաներ՝ 56—58 ցենտներ բամբակի բերք։

✪ Ցուցահանդեսի այցելուները կարող են ծանոթանալ երկրի առաջավոր շրջանների աշխատանքի փորձին, որոնք վարելահողի, մարգագետինների, արոտավայրերի յուրաքանչյուր 100 հեկտարից ստանում են 500—600 ցենտներ կաթ, կոլտնտեսությունների ու

սովխոզների, որոնք վարելահողի մարգագետինների,
արոտավայրերի յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց
ստանում են 800—1000 ցենտներ և ավելի կաթ։

✪ Անասնաբուծության բաժնում ցուցադրվում են
տարբեր տոհմերի ավելի քան 2 հազար բարձր մթե-
րատու գյուղատնտեսական կենդանիներ։ Ցուցահան-
դեսում ներկայացված են 32 տոհմի խոշոր եղջերավոր
անասուններ, այդ թվում այնպիսի բարձր մթերատու
տոհմի, ինչպես՝ «կոստրոմսկոյան», 51 տոհմի ոչ-
խարներ, դրանց թվում այնպիսի հիանալի տոհմեր,
ինչպես՝ «Կովկասյանը», «Սովետական մերինոսը»,
«Ասկանիայինը», 23 տոհմի խոզեր, 32 տոհմի ձիեր
և այլ կենդանիների տոհմերի մեծ բազմազանու-
թյուն։

✪ Երկրի վեց առաջավոր՝ Կոստրոմայի մարզի
«12-րդ Հոկտեմբեր», «Յարոսլավլի մարզի «Գորշիխա»,
Արխանգելսկի մարզի «Նոր կյանք» և այլ կոլտնտե-
սային ֆերմաներ ամբողջությամբ փոխադրվել են
Մոսկվա և ցուցադրվում են ցուցահանդեսում։

✪ Կոստրոմայի մարզի «Կարավաևո» սովխոզի,
«Սոխվատկա» կովը տարեկան տալիս է 14 հազար 418
կիլոգրամ կաթ, 4,1 տոկոս յուղայնությամբ, Չեռնի-
գովի մարզի Կիրովի անվան կոլտնտեսության սիմեն-
տալ տոհմի «Զոլուշկա» կովը՝ 11 հազար 733 կիլո-
գրամ կաթ։ Մոսկվայի մարզի Լուխովիցկի շրջանի
Ստալինի անվան կոլտնտեսության ֆերմայի յուրա-
քանչյուր կովի միջին կաթնատվությունը հասել է 4



հազար 373 կիլոգրամի։ Չերկասի մարզի Զոլոտոնո-
շայի շրջանի «Բոլշևիկ» կոլտնտեսության ֆերմայի
յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասել է 8
հազար կիլոգրամի։

✪ Հայկական ՍՍՌ պավիլիոնը բռնում է 1250 քա-
ռակուսի մետր տարածություն, իսկ նրան կից այգին
պտղատու ծառերով՝ 1600 քառակուսի մետր տարա-
ծություն։ Պավիլիոնն ունի ընդհանուր դահլիճ և խա-
ղողագործության, պտղաբուծության, բուսաբուծու-
թյան ու անասնաբուծության ճյուղային 4 դահլիճներ։

✪ Մի մեծ ստենդ նվիրված է 1939—1941 թ. թ.
ցուցահանդեսի մասնակից «Փարիզյան Կոմունա» կոլ-
տնտեսությանը։ Անցյալ տարի այդ կոլտնտեսությունը
305 հեկտար խաղողի այգու յուրաքանչյուր հեկտարից
ստացել է 95 ցենտներ բերք։ Ստենդում մանրամասնո-
րեն ցույց է տրված այդ առաջավոր կոլտնտեսության
փորձը։

✪ Ցուցահանդեսի բուսաբուծության դահլիճում
ցուցադրվում են Հոկտեմբերյանի շրջանի հենակետա-
յին-ցուցադրական ՄՏ կայանի հաջողությունները,
որը սպասարկում է 5 խոշորացված կոլտնտեսու-
թյունների՝ 4.741 հեկտար ընդհանուր ոռոգվող տարա-
ծությամբ և 1.020 հեկտար խաղողի այգիներով։

✪ Ռեսպուբլիկայում բամբակագործությամբ զբաղ-
վում են 80 կոլտնտեսություններ, ծխախոտագործու-
թյամբ՝ 275 կոլտնտեսություններ։

Լայն ցուցադրման է ներկայացված Շահումյանի շրջանը, որի կոլտնտեսությունները 1952 թվականին յուրաքանչյուր կովից ստացել են 2.118 կիլոգրամ կաթ, իսկ 1953 թվականին՝ 2.289 կգ. կաթ։ 1953 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, կոլտնտեսություններում յուրաքանչյուր կովի կաթնատվությունը բարձրացել է մոտ 4 անգամ։

Ընթացիկ տարում Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսը կայցելեն կոլտնտեսությունների, ՄՏԿ-ների, սովխոզների ավելի քան 300 հազար ներկայացուցիչներ։

---



# ԹՅՈՒՐՔ-ՊԱԿԻՍՏԱՆՅԱՆ ՌԱԶՄԱԿԱՆ ԴԱՇԻՆՔԻ ՄԱՍԻՆ

Երևանի կենտրոնական հեռագրատան ագիտատոր Ս. Նազարյանը դիմել է խմբագրությանը և խնդրել տպագրել հոդված «Թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքի մասին»:

*Թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքը ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության քայլերից մեկն է։ Թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքի իսկական հեղինակը ոչ թե Թյուրքիան ու Պակիստանն են, այլ Ամերիկայի Միացյալ Նահանգները։*

*Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ի կառավարող մոնոպոլիստական շրջանների իմպերիալիստական քաղաքականության տեսադաշտից չվրիպեցին Միջին և Մերձավոր Արևելքի երկրները։ Ամերիկայի Միացյալ Նահանգները կանգնեցին աշխարհի այս մասում ևս ագրեսիվ ռազմական խմբավորումներ ստեղծելու ուղու վրա, որոնք պետք է գործեն ամերիկյան թելադրանքով և ի հաճույս ամերիկյան իմպերիալիզմի։*

Դեռևս 1951 թվականին ԱՄՆ-ի նախաձեռնությամբ և Անգլիայի, Ֆրանսիայի ու Թյուրքիայի մասնակցությամբ առաջ է քաշվում այսպես կոչված «միջին արևելյան հրամանատարություն» ստեղծելու պլանը, որի նպատակն էր Միջին և Մերձավոր Արևելքի երկրներին միավորել ռազմական բլոկի մեջ՝ ընդդեմ ՍՍՌՄ-ի և ժողովրդա-դեմոկրատական երկրների։

«Միջին արևելյան հրամանատարություն» կոչված ռազմական խմբավորման հեղինակների մտահղացմամբ այն իրենից պետք է ներկայացներ ոչ այլ ինչ, քան Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ ռազմական բլոկի բաժանմունքը Մերձավոր և Միջին Արևելքում։ Սակայն այդ պլանը ձախողվեց արաբական ժողովուրդների համատեղ ջանքերով, որոնք վճռականորեն հանդես եկան իրենց երկրները ռազմադաշտի վերածելու դեմ։

«Միջին արևելյան հրամանատարություն» ստեղծելու պլանի ձախողումից հետո ամերիկյան դիվանագիտությունը դիմում է նոր դավերի, փորձելով արաբական երկրներին ներքաշել այսպես կոչված «միջին արևելյան պաշտպանական կազմակերպության» մեջ, որը հետապնդում էր նույն ագրեսիվ իմպերիալիստական նպատակները։ Ամերիկյան իմպերիալիզմի այս պլանը նույնպես դատապարտվեց ձախողման։

Կանգնած լինելով երրորդ համաշխարհային պատերազմ պատրաստելու հանցավոր ուղու վրա, Ամերիկայի Միացյալ Նահանգները հանգիստ չեն տալիս Մերձավոր ու Միջին Արևելքի երկրներին և ամեն ջանք



գործադրում են իրենց ագրեսիվ ռազմա-ստրատեգիական, տնտեսական ու քաղաքական նվաճողական դիտավորությունները իրականացնելու համար։

1953 թվականին պրեզիդենտ Էյզենհաուերի կառավարությունը, շարունակելով Տրումենի կառավարության արտաքին քաղաքականության իմպերիալիստական կուրսը, ավելի բացահայտ ու ավանտյուրիստական մեթոդներով առաջ է քաշում Մերձավոր և Միջին Արևելքի երկրների հետ երկկողմանի ռազմական համաձայնագրեր կնքելու պլանը։ Այդ առաջարկին խոնարհաբար արձագանքեցին Պակիստանի կառավարող շրջանները, և սկսեցին բանակցությունները ամերիկա-պակիստանյան ռազմական դաշինք կնքելու ուղղությամբ, որով ԱՄՆ-ը Պակիստանին պետք է մատակարարի սպառազինություն և դրա փոխարեն նրա տերիտորիան օգտագործի որպես ռազմական բազա։ Ամերիկյան այս պլանից էլ բան դուրս չեկավ, այն պատճառով, որ այն հանդիպեց Հարավային և Հարավ-Արևելյան Ասիայի, ինչպես նաև Միջին և Մերձավոր Արևելքի երկրների ժողովուրդների վճռական դիմադրությանը։

Այս անգամ ամերիկյան դիվանագիտությունը դիմեց նոր տրյուկի, որոշելով Պակիստանին կապել ամերիկյան մարտակառքին՝ Թյուրքիայի միջոցով Պակիստանին առաջարկելով ռազմական դաշինք կնքել Թյուրքիայի հետ և ապա դիմել ԱՄՆ-ի օգնությանը։

Ամերիկյան այս թելադրանքի ուժով էլ այս տարվա

փետրվարին կնքվեց Թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքը։ Թյուրքիայի և Պակիստանի միջև կնքված ռազմական դաշինքը Պակիստանին դրեց Ամերիկայի արբանյակների շարքը և ԱՄՆ-ի ձեռքին ծառայում է որպես գործիք այդ երկրներին ստրկացնելու համար։

Թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքը կնքելուն հետևեց Ամերիկայի Միացյալ Նահանգների հայտարարությունը Պակիստանին ռազմական օգնություն ցույց տալու վերաբերյալ։ Մայիսի 19-ին ԱՄՆ-ի և Պակիստանի միջև համաձայնագիր կնքվեց այդ ռազմական օգնության մասին։ Այդ համաձայնագրով ԱՄՆ-ը իր վրա է վերցնում Պակիստանի բանակի սպառազինումը և ուսուցումը, որով և Պակիստանի բանակը ամբողջովին դրվում է Ամերիկայի Միացյալ Նահանգների վերահսկողության տակ։ Ինչպես տեսնում ենք, Թյուրք-պակիստանյան պակտով Պակիստանը ըստ էության ռազմական դաշինքով միացավ Ամերիկայի Միացյալ Նահանգներին և Թյուրքիային, ներգրավվեց ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականության ոլորտը։ Հարելով ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքական կուրսին, Պակիստանը վեր է ածվում ամերիկյան ռազմական բազայի։ ԱՄՆ-ը Պակիստանին որոշակի տեղ է հատկացնում իր ստրատեգիական պլաններում, որոնք սպառնում են խաղաղությանն Ասիայում։

Թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքով է՛լ ավելի վատթարացավ Թյուրքիայի վիճակը։ Առանց



այն էլ Մարշալի պլանով և Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ պակտին միանալով, Թյուրքիան դարձել էր ամերիկյան իմպերիալիզմի կամակատարը։

Ամերիկյան իմպերիալիզմը չի բավարարվում Թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքի գոյություն ունեցող շրջանակներով և դիմում է իրեն հատուկ բոլոր ստոր միջոցներին, այդ թվում կառավարական հեղաշրջումների, կամենալով Միջին ու Մերձավոր Արևելքի բոլոր երկրներին ներքաշել Թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքի մեջ և այդպիսով այդ երկրներն ամբողջովին ենթարկել իր ագրեսիվ իմպերիալիստական քաղաքական կուրսին՝ ընդդեմ ՍՍՌՄ-ի և ժողովրդա-դեմոկրատական երկրների։

Միջին և Մերձավոր Արևելքի երկրներում Ամերիկայի Միացյալ Նահանգները աջ ու ձախ առաջարկում են իրենց ռազմական օգնությունը իբր Արաբական երկրներին այսպես կոչված կոմունիստական վտանգից պաշտպանելու համար։ Իրականում ամերիկյան իմպերիալիզմը կաշվից դուրս է գալիս իր ավանտյուրիստական քաղաքականությունը փաթաթելու արաբական երկրների վզին, գաղութացնելու այդ երկրները։

Ամերիկյան կառավարող շրջանները մոլեգնորեն շարունակում են իրենց սև գործը՝ ռազմական բլոկներ ստեղծելու ուղղությամբ։ Այսօր ամերիկյան դիվանագիտության օրակարգում դրված է Հարավ-Արևելյան Ասիայում ռազմական բլոկ ստեղծելու հարցը։ Ամերիկյան իմպերիալիզմի այս նոր պլանները հան-

դիպում են Ասիայի ժողովուրդների ամենավճռական դիմադրությանը։

Հնդկաստանը, Ինդոնեզիան, Բիրման, Ցեյլոնը մերժել են Հարավ-Արևելյան Ասիայում ագրեսիվ ռազմական բլոկ ստեղծելու համար իմպերիալիստների կողմից հրավիրվող կոնֆերանսին մասնակցելու առաջարկը։

Հնդկաչինում պարտություն կրած ամերիկյան իմպերիալիզմը դիմում է նոր ավանտյուրաների՝ ժողովուրդների ջանքերով նվաճված խաղաղությունը խախտելու, նոր պատերազմներ հրահրելու համար։ Այդ նույն նպատակին է ծառայում ԱՄՆ-ի կողմից ստեղծված թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքը, որը դատապարտվում է Պակիստանի, Թյուրքիայի և Արևելքի մյուս երկրների միլիոնավոր մարդկանց կողմից։

Ամերիկայի Միացյալ Նահանգներին հաջողվել է իրեն ենթարկել Պակիստանի, Թյուրքիայի և Արևելքի մի քանի այլ երկրների կառավարող շրջաններին, սակայն այդ երկրների ժողովուրդները մերժում են ամերիկյան իմպերիալիզմի գաղութային քաղաքականությունը և շարունակում են ուժեղ դիմադրություն ցույց տալ իրենց ստրկացնողներին։

Ամերիկյան իմպերիալիզմի այն կեղծիքը, թե իբր Սովետական Միությունը սպառնում է ասիական երկրներին, ոչնչով չի փրկում ԱՄՆ-ի սնանկացած հեղինակությունը Միջին ու Մերձավոր Արևելքի երկրներում։ Կյանքը ցույց է տվել, որ երկրներից և ոչ մեկին Սովետական Միությունը չի սպառնացել և չի սպառնում։



Ասիայի ժողովուրդները քաջ գիտեն, որ ՍՍՌՄ-ը մշտապես բարյացակամ վերաբերմունք է ցուցաբերել իրենց ազատության, ազգային անկախության համար պայքարող բոլոր ժողովուրդների նկատմամբ։

Սովետական Միությունը հետևողականորեն պաշտպանում է Միջին և Մերձավոր Արևելքի երկրների ազգային անկախության շահերը՝ լինի Միավորված ազգերի Կազմակերպությունում, թե նրանից դուրս։ Սովետական Միությունն էր, որ պաշտպանեց Եգիպտոսից, Սիրիայից ու Լիբանանից օտարերկրյա զորքերը դուրս հանելու վերաբերյալ առաջարկությունը։ Սովետական Միությունը պաշտպանում է Թունիսի, Մարոկկոյի և մյուս կախյալ երկրների ազգային շահերը ճանաչելու ու հարգելու ուղղությամբ կատարվող ամեն մի քայլ։ Այդ է պատճառը, որ չնայած ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանների և նրանց կամակատարների սանձարձակ կեղծիքներով հեղեղված պրոպագանդային ու զրպարտություններին, Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը ավելի ու ավելի լայն արձագանք ու աջակցություն է գտնում Ասիայի երկրների միլիոնավոր մասսաների մեջ, որոնք Սովետական Միության մեջ տեսնում են իրենց շահերի հավատարիմ պաշտպանին։

Ամերիկայի Միացյալ Նահանգների կողմից ստեղծվող ռազմական խմբավորումները, լինի այդ Թյուրք-պակիստանյան պակտի ձևով, թե ԱՄՆ-ի արբանյակների այլ խմբավորման ձևով, ուղղված են միջազգային խաղաղության, ժողովուրդների ազգային անկախության ու դեմոկրատական ազատությունների դեմ։ ԱՄՆ-ի կողմից Ասիայում ստեղծվող ռազմական խըմբավորումները կրկին ու կրկին այն են հաստատում, որ ամերիկյան իմպերիալիզմը ամենուրեք հանդես է գալիս ժանդարմի դերում, որպես ամբողջ աշխարհի խաղաղասեր ժողովուրդների ոխերիմ թըշնամի։ Ամերիկայի Միացյալ Նահանգների ագրեսիվ, իմպերիալիստական քաղաքականությունը առաջ է բերել ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկանց ատելությունն ու զզվանքը դեպի ԱՄՆ-ի կառավարող մոնոպոլիստական շրջանները։ Ամերիկյան իմպերիալիզմի ավանտյուրիստական պլաններին ժողովուրդները պատասխանում են իրենց շարքերի միասնության ամրապնդմամբ՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։

Դոցենտ՝ Ա. Ղ. ԽՍԱՅԱՆ

---

